— «Միայն Ռուսերը պատժեցին իրենց ցաւը, որ պատասխանատու էր պատերազմին եւ ոտքի կանգնեցան, իսկ մենք ողջ ծգեցինք մերինը, որ այժմ ոտքի տակ կ'առնէ մեզ»:

Հարցաքննիչ դատաւորը գրաւել տուաւ թերթին 13,000 օրինակները, Հաշէթի մթերանոցին, լրագրին խմբագրատան եւ տպարանին մէջ:

## Խռուածները կը գործեն

Զագրէպէն կը հեռագրեն թէ Խռուած երեսփոխաններու խորհրդաժողովը կը շարունակէ իր աշխատանքները: Խմբակցութեան գործադիր կոմիտէն պիտի կազմակերպէ պայքարը կառավարութեան կեդրոնաձիգ քաղաքականութեան դէմ եւ պիտի համախմբէ ազգային բոլոր ուժերը, իրենց սկզբունքները ընդունիլ տալու համար:

⁂ Սերպ ոստիկանութիւնը ձերբակալեց պետական պաշտօնատար մը, որ կ'ամբաստանուի թէ մահափորձ մը կազմակերպած է դահլիճին երկու խռուած Նախարարներուն դէմ: Ուրիշ ձերբակալութիւններու կը սպասուի:

## Թուրքիոյ հին թղթադրամները

Թուրքիոյ ելմտական գործավարութիւնը հետեւեալ ազդը հրատարակած է.— 1.) Հին թղթադրամները մինչեւ Սեպտեմբեր 4 թուականը պէտք է փոխանակուին: 2.) Այդ թուականէն յետոյ հին թղթադրամները ոչ վճարման համար պիտի ընդունուին և ոչ ալ Հանրապետութեան թղթադրամով պիտի փոխանակուին: Հետեւաբար անոնք որ հին թղթադրամներէն ունին իրենց քով, մինչեւ Սեպտեմբեր 4ի պայմանաժամը պէտք է դիմեն թղթադրամներու փոխանակութեան պաշտօնատան:

## Մուսուլի քարիւղները եւ Ֆրանսա

Մուսուլի քարիւղին շահակից ընկերութեանց միջեւ բանակցութիւնները գրեթէ աւարտած են: Մանաւանդ լուծուած է խողովակներու հետեւելիք ճամբուն մասին յարուցուած վէճը: Կողմերուն միջեւ առժամեայ համաձայնագիր մը ստորագրուած է արդէն:

## Իտալական բանակ սերբ սահմանին վրայ

Պելկրատի «Պոլիտիկա»ն Շուշաքէն կը տեղեկանայ թէ Իտալացիները աւելի քան 100,000 զինուոր համախմբած են իտալեւեուկոսլաւ սահմանագլուխին վրայ: 15րդ զօրաբաժինը կեդրոնացած է Քլանա-Ֆիումէի շրջանին մէջ: Թրիէսթէի 12րդ զօրաբաժինը, որ կը գտնուի Իստրիայի շրջանին մէջ եւ Ալպեան 3րդ կիսաբաժինը, որ Թրեկլաւ կը գտնուի, համախմբուած են Թրէվիզի մօտ: Ասկէ զատ, Ուտինէի 13րդ զօրաբաժինը նոյնպէս Թրէվիզի մօտերը կը գտնուի:

Բոլոր այս զօրաբաժինները թնդանօթ ունին:

«Պոլիտիկա» կ'աւելցնէ թէ 1924ին, Եուկոսլաւիոյ հետ բարեկամական դաշնագիր կնքելէ յետոյ, Մուսոլինի յայտարարած էր թէ Սերպիա այդ դաշնագիրը ստորագրեց՝ որպէս զի Իտալիա սահմանագլուխէն քաշէ իր զօրաբաժինները: Հիմա որ բարեկամական դաշինքին պայմանաժամը լրացաւ, Մուսոլինի դարձեալ իր զինուորները կը կեդրոնացնէ սահմանին վրայ՝ ցոյց մը ընելու նպատակով:

ԽՄԲ.— Պելկրատի թերթին հաղորդած այս լուրը վերապահութեամբ պէտք է ընդունիլ:

## Ուրիշ զինուոր. պատրաստութիւններ

«Տէյլի Մէյլ»ի Վարշաւայի թղթակիցը կը հեռագրէ թէ Լիթուանիա զինուորական մեծ պատրաստութիւններ կը տեսնէ լեհ սահմանագլուխին վրայ: Թնդանօթի կայաններ եւ փշոտ թելեր շինել կուտայ: Գիշերային հետազօտութիւններ կը կատարուին սահմանագլուխի երկայնքը:

Լեհեւլիթուանական սահմանագլուխին մօտ, Սլիթայի մէջ Լիթուանական ռազմանիւթի մթերանոց մը օդը ելաւ: Ինը զինուորներ սպաննուեցան և վաթսուն հոգի վիրաւորուեցան: Մեծ մասը մեռնելու վտանգին տակ են: Պայթումէն քանդուեցան քանի մը շէնքեր:

Կացութիւնը կը կնճռոտի երկու երկիրներուն միջեւ: Մեծ պետութիւնները կը խստացնեն իրենց դիմումները երկու հակառակորդներուն մօտ: Գերմանիա դիմած է Ֆրանսայի՝ խնդրելով որ խօսք հասկցնէ Լեհաստանի: Միւս կողմէ Լիթուանիոյ դիտել տրուած է, որ ո՛չ մէկ օգնութիւն պէտք է ակնկալէ Ռուսիայէն կամ արեւմտեան պետութենէ մը:

Եթէ ազգերու Դաշնակցութիւնը չկարենայ ոեւէ բան ընել, պատերազմը անխուսափելի կը նկատուի՝ Վիլնայի համար:

## Նոր երկրաշարժ Իզմիրի մէջ

Պոլիսէն կը հեռագրեն Օգոստոս 3 թուականով.— Նոր և ուժգին ցնցումներ զգացուեցան այսօր Իզմիրի շրջանին մէջ: Քաղաքին մէջ ցնցումները թեթեւ էին: Զոհ չկայ:

## Խորհրդաւոր ախտ մը Անգլիոյ մէջ

Քանի մը օրէ ի վեր Լոնտոնի թերթերը մտահոգութիւն կը յայտնեն խորհրդաւոր ախտի մը մասին, որուն զոհ կ'երթան միայն ոստիկաններ: Քանի մը հոգի մեռած են արդէն, իսկ հիւանդները ուշագրաւ թիւ մը կը կազմեն: Դիագննութեան համաձայն, զոհերը թունաւորուեր են աւրուած ուտելիքներով: Գաւառական կարգ մը քաղաքներու մէջ ալ ծայր տուած է հիւանդութիւնը:

Առողջապահական նախարարութիւնն ալ պաշտօնական զեկոյցով մը կը յայտնէ թէ համաճարակը (ժանտատենդ, աղետապ եւայլն) հետեւանք է աւրուած սերի եւ կաթի:

Կալլէսի երկրին մէջ 25 հոգի թունաւորուեր են, աւրուած խոզեղէն ուտելով:

## Ամունտսէն եւ Կիլպօ ո՞ղջ են

Քոփէնհակէն հեռագիր մը կ'ըսէ.— Օսլոյի խորհրդային դեսպանին կինը կ'ըսէ թէ «Կրասին»ի մարդոց կարծիքին համաձայն, Ամունտսէն եւ Կիլպօ կը գտնուին Ֆրանց-Եոզէֆի երկրին մէջ: Այժմ հետախուզութիւնները պիտի կատարուին այդ շրջանին մէջ:

⁂ Օդանաւորդ Պապուշքին եւ Վայգ տեղեկագիր մը ներկայացուցին օգնութեան կոմիտէին, բացատրելով այն ծանր դժուարութիւններն ու վտանգները, որոնց ենթարկուեցաւ քանիցս «Կրասին», իր վերջին հետազօտութեանց ընթացքին: Ամբողջ հինգ օր ստիպուեցաւ պայքարիլ փոթորիկին դէմ: «Կրասին»ի պաշտօնէութիւնը թանկարժէք ուսումնասիրութիւններ կատարած է բեւեռի մասին:

## ԴԱՇՏԱՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած՝ Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի մասնաճիւղին կողմէ Այսօր կիր. առաւօտէն մինչեւ երեկոյ, Քլամառի անտառին մէջ, աղբիւրին մօտը:

կը նախագահէ՝ Պ. Ն. ՕՀԱՆԵԱՆ

Հաղորդակցութեան միջոցներ.— Առնել թրամուէյ թիւ 89 Սէն Միշէլէն կամ Փորթ Վէրսայլէն եւ իջնել Թէրմինիւս: Շոգեկառք՝ Էնվալիտէն, իջնել՝ Մէօտօն-Վալ Ֆլէօրի:

## Հ. Յ. Դ.

Փարիզի Քրիստափոր խումբի ժողովը՝ վաղը Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին Rue des Ecoles լա Շօփ Փարիզիէնի վերնայարկը:

Փարիզի Աղբիւր Սերոբ խումբի ժողովը՝ այսօր Կիր. առաւօտ ժամը 10ին, 184 Ave. Italie.

Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

Տէսինի Քրիստափոր խումբի ժողովը՝ վաղը Երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 4ին ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրով: Իսկ ժամը 6ին դասախօսական ժողով: Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

## Միշտ Մակեդոնացիներուն խնդիրը

Պուլկարիոյ հեռագրական գործակալութիւնը կը հաստատէ Սօֆիայի անգլիական եւ ֆրանսական դեսպաններուն կողմէ կատարուած դիմումը՝ Մակեդոնացիներու մասին: Երկու դեսպանները ուշադրութիւն հրաւիրած են թէ սահմանագլուխի դէպքերը կրնան միջազգային կնճիռներ յարուցանել: Արտաքին նախարար Պ. Պուրօֆ պատասխանելով, յայտնած է թէ կառավարութիւնը գիտակից է իր պարտականութեան եւ շեշտած է թէ երկար ատենէ ի վեր ո՛չ մէկ դէպք պատահած է: Աւելցուցած է թէ ամէն միջոց ձեռք առնուած է, անդորրութիւնը պահպանելու համար սահմանին վրայ:

Կը հաստատուի նաեւ թէ մասնաւոր միջոցներ ձեռք առնուած են, բոլոր կասկածելի տարրերը զինաթափելու եւ սահմանագլուխէն հեռացնելու համար:

## Կրօններու համագումար

Սեպտեմբեր 12—14, Ժընեւի մէջ տեղի պիտի ունենայ խորհրդաժողով մը, աշխարհի բոլոր կրօնքներուն մասնակցութեամբ, իբրեւ նախապատրաստութիւն 1930ի ընդհ. կրօնական ժողովին: Գլխաւոր պատուիրակներուն մէջ պիտի գտնուին կոմփիւկիոսի կրօնին հովուապետը, շինթոյականութեան (Ճափոն) ներկայացուցիչը, երեք պուտտայականներ՝ Սէյլանէն, Մէհմէտ Ալի՝ Հնդկաստանի իսլամութեան կողմէ եւլն.: Ներկայացուցիչներ պիտի ղրկեն նաեւ, քրիստոնեայ երկիրներէն զատ, Թուրքիա եւ Եգիպտոս: Մէկ խօսքով, պիտի մասնակցին աշխարհի բոլոր ցեղերը:

## Իտալիա գոհացում կը պահանջէ

Սփալաթոյի իտալական հիւպատոսին դէմ կատարուած թշնամական ցոյցին առթիւ, Պելկրատի իտալական դեսպանը պահանջեց որ Եուկոսլավիոյ կառավարութիւնը պաշտօնապէս ներողութիւն խնդրէ, յանցաւորները պատժուին, ինչպէս եւ այն պաշտօնեաները որոնք միջոցներ ձեռք չառին, հիւպատոսին ապահովութեան համար: Դեսպանը կը շեշտէ թէ ցոյցերը նախատեսուած էին և տեղական իշխանութիւնը ոչ մէկ միջոց ձեռք առաւ, զանոնք արգիլելու համար: Իտալիա իրեն կը վերապահէ ուրիշ հատուցումներ պահանջել:

Սերպիոյ արտաքին նախարարը անմիջապէս ցաւակցութիւն յայտնեց իտալական դեսպանին եւ ներողութիւն խնդրեց:

⁂ Նոր հեռագրի մը համաձայն, ցուցարարներէն 34 հոգի համագումար 408 օր բանտարկութեան դատապարտուած են:

## Նոր առեւանգում Եանինայի մէջ

Յոյն երեսփոխանական թեկնածուները հազիւ ազատած, նոր առեւանգումի մը լուրը կը հասնի Եանինայէն:

Աւազակները լեռ տարած են Եանինայի հոլանտական փոխհիւպատոսը՝ Պ. Նիքօլէսքօ և կինը: Հիւպատոսը ազատ ձգուած է, որպէսզի 1000 ոսկիլին փրկանք բերէ, կինն ալ ազատելու համար: Հակառակ պարագային, աւազակները կը սպառնան սպաննել տիկինը:

## Յունական ընտրութիւնները

Աթէնքէն կը հեռագրեն.—

Այն մասնախումբը որ պաշտօն ունէր քիմիական բաղադրութիւն մը գտնելու, որպէս զի քուէարկուներուն ցուցամատին քսուի եւ քանի մը օր տեւէ, յայտնեց թէ առաջարկուած նիւթը չի կրնար անջնջելի դառնալ:

Մասնախումբը կ՚աւելցնէ թէ չի կրնար առաջարկել ուրիշ բաղադրութիւն մը, որ թէ անջնջելի ըլլայ եւ թէ անվնաս: Այս եզրակացութեան վրայ, ժողովրդային կուսակցութիւնը առաջարկեց որ քուէարկուներուն թեւին մէկ մասը ածիլուի, որպէսզի չկարենան քուէ տալ երկրորդ անգամ. բայց Պ. Վէնիզէլոս մերժեց, նուաստացուցիչ գտնելով այս միջոցը, եւ խոստացաւ իր կարելին ընել, խարդախութեանց առաջքը առնելու համար:

## Ծանր արկած մը Սուրիոյ մէջ

Պէյրութէն կը հեռագրեն թէ Ալփին Մոնթան ընկերութեան հանքերուն մէջ, կողով մը ուր վեց հանքագործներ կային, գահավիժեցաւ 215 մեդր բարձրութենէ մը, գործաւորի մը անհոգութեան հետեւանքով: Չորս հանքագործներ մեռան, իսկ միւս երկուքը ծանրապէս վիրաւորուեցան:

## Ջրահաւորի մը շինութեան համար

Գերմանիոյ մէջ մեծ յուզում կը տիրէ, զրահաւորի մը շինութեան որոշումը պահելու կամ ջնջելու որոշման առթիւ: Դահլիճին ընկերվարական անդամները հաւանած ըլլալով այս որոշման, կուսակցութիւնը կ՚ուզէ պատասխանատուութեան հրաւիրել զանոնք: Կացութիւնը այնքան փափկացած է որ, նախարարները կարճ կապեցին իրենց արձակուրդը: Ընկերվարականները կ՚առաջարկեն հանրաքուէ կատարել, համաձայն Սահմանադրութեան տրամադրութեանց: Միւս կողմէ կը ծանուցուի թէ պաշտպանութեան նախարարութիւնը հեռագրով հրամայած է Քիլի նաւարանին՝ անմիջապէս ձեռնակել զրահաւորին շինութեան: Վարչապետ Պ. Միւլլէր, որ ընկերվարական է, կ՚աշխատի միջին ճամբայ մը գտնել: Մասնաւորապէս գրգռուած են Սաքսոնեան ընկերվարականները, որոնք բացառիկ ընդհ. ժողով կը պահանջեն:

## Նոր օրէնք «լքեալ» գոյքերու մասին

ԷՆԿԻՒՐԻ, 12.— Սեփականացման հրահանգը ընդունուեցաւ Գործավարներու Խորհուրդին կողմէ: Հրահանգին համաձայն, փոխանակելիները իրենց ձեռք գտնուած վաւերագրերու համաձայն 100ին 50, 100ին 40 եւ 100ին 25 համեմատութեամբ կալուած եւ իրենց առած 100ին 25 աւելորդին համար միեւնոյն քանակութեամբ իրենց պարտքին համար, մինչեւ եօթը տարի հատուցանելու պայմանով, «իրօթէք»ով «թափու» պիտի ստանան: 100ին 75էն աւելի իրենց առած կալուածին համար ալ ելմտական եւ իտարէի ժողովներուն կողմէ գնահատութիւն պիտի ըլլայ:

Փոխանակելիները՝ գնահատուելիք քանակութեան համեմատ այդ բաժինը ընդունելու կամ մերժելու ազատ են: Իրենց կալուածը փոխանցելու համար դիմում կատարող փոխանակելիներու միայն Յունաց կալուածները պիտի տրուին: Հայոց կալուածները չպիտի տրուին, իսկ մինչեւ հիմա փոխանցուած կալուածներու համար տէրերուն «թափու» պիտի տրուի:

Էնկիւրի, գետեղման շրջանակէն դուրս ըլլալով, այս որոշման թուականէն յետոյ Էնկիւրիի կալուածները փոխանակելի գաղթականներու չպիտի կրնան յատկացուիլ:

---

**Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷՆ**

ժողովի կը հրաւիրէ փարիզի եւ շրջանի բոլոր խումբերու ներկայացուցիչները ինչպէս նաեւ գանձապահները վաղը երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 60 Rue des Ecoles, La Chope Parisienneի վերնայարկը:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի մեծկերտցի Օր. Ալթուն Ունանեան որ 1927ին Յունաստանէն Եգիպտոս մեկնած է: իմացնել՝ իր մօրաքրոջ, Ռուբէն Մինասեանի, 36 Rue Dominicaines, Marseille, France.

կը խնդրուի եգիպտահայ թերթերէն արտատպել:

— կը փնտռեմ եղբայրս Մարաշցի Հայկ Ալէքսանեան որ 1924ին կը գտնուէր Պոլիս հետեւեալ հասցէին, «Ստամպուլտա Քիւչիւք Համամ եանընտա»: իմացնել՝ Տիգրան Ալէքսանեանի, chezMr. Delorme-Goyet,Poncins, par Feurs, (Loire).

կը խնդրուի Պոլսահայ թերթերէն արտատպել:

— կը փնտռուի Էյպէգցի Յակոբ Աբիկեան որ 15 տարիէ իվեր փարիզ կը բնակի: իմացնել իր հասցէն Յակոբ Ժամագործեանի, 20 Rue Traversière, Billancourt, Seine.

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՆԻՍ, Հ.Յ.Դ.Շրջ.Կ. —Ջեր Օգոստ. 13ի նամակը ստացանք 18ին որով չկրցանք յայտարարել:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY











## Ռատիչի տունը կ'այրին

Զաղրէպէն կը հեռագրեն թէ առջի օր հրդեհ ծագած է Ռատիչի ամառնային բնակարանէն։ Հրշէջները երեք ժամուան աշխատանքէ վերջ յաջողեցան մարել կրակը։ Կը կարծուի թէ հրդեհը դիտումնաւոր է, քանի որ ծագած է միաժամանակ երկու տեղէ՝ սրահէն եւ տանիքէն։ Քննութիւնը հաստատեց թէ առաջին բոցերու երեւումէն յետոյ տեսնուած են զինուորներ, որոնք հապճեպով կը մեկնէին տունէն՝ ինքնաշարժներ նստած։

Այս դէպքին վրայ ցոյցեր կատարուեցան Զաղրէպի մէջ եւ ռումբ մը նետուեցաւ Ռատիչի գերեզմանին վրայ։

Նոր եւ աւելի ծանր ցոյցերու կը սպասուի։

## Զրահաւոր մը Սեւ ծովուն տակ

Նովորոսիսկէն կը հեռագրեն 27 օգոստոս թուականով.— Տարիներով ի զուր փնտռելէ վերջ ռուսական «Ազատ Ռուսիա» տրէտնօթը, որ Սեւ Ծովուն մէջ ընկղմած էր 18 յունիս 1918ին, հետախուզիչ ընդծովեաններ օգոստոս 20ին գտան հսկայ զրահաւորը, որ ցռուկը օդին՝ պառկած է 42 մեդր խորութեան տակ։ «Ազատ Ռուսիա» 25.000 թոնօ տարողութիւն ունէր։ Ձեռնարկներ կ'ըլլան ծովուն երեսը հանելու համար։

## Նոր հիւանդութիւն մը Մարսիլիոյ մէջ

Մարսիլիոյ մէջ ծագած է նոր հիւանդութիւն մը, որ շատ կը նմանի բծաւոր ժանտատենդի (թիֆիւս)։ Հիւանդը նախ ջերմ կ'ունենայ, յետոյ ալ մորթի բորբոքում։

Գիտական Ակադեմիայի առջի օրուան նիստին մէջ տոքդ. Ռու ներկայացուց բժշկ. տեղեկագիր մը, զոր գրի առած էին Մարսիլիայէն եւ Թունուզէն երկու բժիշկներ։ Այդ տեղեկագրին համաձայն, Մարսիլիոյ բծաւոր ժանտատենդին ենթակայ հիւանդներուն արիւնը կապիկներուն ներարկելով, ստացուած է ջերմային հիւանդութիւն մը, որ փոխանցուած է կապիկէ կապիկ։

Մասնագէտներու կողմէ փորձերը կը շարունակուին՝ Մարսիլիոյ հիւանդութեան էութիւնը եւ բծաւոր ժանտատենդի հետ անոր կապը հասկնալու համար։

## Վիլնան՝ լիթուանական թղթադրամին վրայ

Լիթուանիոյ կառավարութիւնը շուտով հրապարակ կը հանէ 50 լիթանոց (մօտ մէկ անգլ. ոսկի) նոր թղթադրամներ, որոնց մէկ կողմին վրայ տպուած է Վիլնայէն տեսարան մը, միւս կողմին վրայ կ'երեւայ պատկերը Լիթուանիոյ մեծ դուքս Կէտիմինի, որ իշխած է 1316էն 1341 եւ Վիլնան Լիթուանիոյ մայրաքաղաք բրած։ Հակառակ անոր որ Վիլնան այժմ կը պատկանի Լեհաստանի, վերջերս Լիթուանիոյ նոր Սահմանադրութիւնը զայն մայրաքաղաք հռչակեց Լիթուանիոյ։ Լեհաստանի եւ Լիթուանիոյ ամբողջ վէճը կը դառնայ այդ քաղաքին շուրջ։

⁂ Քովնոյէն կը հեռագրեն 27 օգոստ. թուականով.— Վարչապետ Վալտէմարաս խօսք առնելով խորհրդաժողովի մը մէջ, որուն կը մասնակցէին Լիթուանիոյ բոլոր կողմերէն եկած 3000 ազարակապաններ, յայտարարեց թէ Լիթուանիա երբեք չի հրաժարիր Վիլնայի վրայ իր իրաւունքներէն։ «Խնդիր չէ թէ Լիթուանիա այսօ՞ր պիտի տիրանայ Վիլնայի թէ վաղը. միայն պէտք է ապահով ըլլայ թէ օր մը չէ օր մը այդ քաղաքը իրենը պիտի ըլլայ»։

## Մահ մարաջախտ Ֆայոլի

Առջի օր կարճ հիւանդութենէ մը յետոյ մեռաւ մարաջախտ Ֆայոլ, Ֆրանսայի զինուորական կարեւոր դէմքերէն մէկը։ 76 տարեկան էր եւ ծնած էր Լը Փիւի։ Պատերազմէն ի վեր առաջին մարաջախտն է որ կը մեռնի։

Երբ ընդհանուր պատերազմը ծագեցաւ, Ֆայոլ հանգստեան կոչուած էր, տարիքին պատճառաւ. սակայն շուտով գործօն ծառայութիւն ստանձնեց եւ կարգ մը փայլուն յաջողութիւններէ վերջ, իր բանակը մեծ ճակատամարտներ մղեց Լորէնի, Շանփանեիի եւ իտալական ճակատին վրայ։ Ամէն տեղ ռազմագիտական մեծ տաղանդ ցոյց տուաւ։ Երկին Ֆրանսա կանչուելով, կարեւոր դեր մը խաղաց պատերազմի վերջին վճռական օրերուն։

Մարաջախտ Ֆայոլ ուսուցիչ եղած է Փարիզի զինուորական վարժարանին մէջ, ուր իրեն աշակերտած են մարաջախտ Ֆոշ, մարաջախտ Փէթէն եւ ուրիշ զինուորական կարեւոր դէմքեր։ Գրած է նաեւ մասնագիտական գիրքեր։

## Մուսթաֆա Քէմալ Ռոտոսթոյի մէջ

Գրած էինք թէ Մուսթաֆա Քէմալ Ռոտոսթօ գացած է «էրթօղրուլ» զրօսանաւով։ Իրեն կ'ընկերանային ներքին գործավար Շիւքրի Գայա պէյ եւ երեսփոխաններ Սալիհ, Ֆալիհ Րըֆքը, Րուշէն Էշրէֆ, Րէճէպ Զիւհտի, Խալքի ընդհ. քարտուղար Սաֆվէթ, Մոսկուայի դեսպան Թէվֆիք պէյեր, զօրաբանակի հրամանատար Սալիհ փաշա և այլ զինուորականներ։ Մ. Քէմալ ցամաք ելլելով ուղղակի կառավարչատունը գնաց եւ հոն սկսաւ նոր գիրերը սորվեցնել պաշտօնեաներուն։

Գիշերը Մ. Քէմալ անթելով երաժշտական կտոր մը ուղեց Պոլսոյ կեդրոնէն. երկու վայրկեան ետքը, ուզուած կտորը սկսաւ եւ զրօսանաւին մէջ անթելով ունկնդրուեցաւ։

Մուսթաֆա Քէմալ Պոլիս վերադարձած է արդէն։

## Սուրիոյ եւ Թուրքիոյ միջեւ

Սուրիոյ մէջ կալուած ունեցող Թուրքերուն կողմէ պատուիրակութիւն մը ներկայացաւ արտաքին գործավարին, եւ գանգատեցաւ թէ իրենց իրաւունքները չեն յարգուիր, թէ ֆրանսական իշխանութիւնը ոչ թոյլ կուտայ ծախել իրենց կալուածները, ոչ ալ վարձքերը գանձել։ Թուրք կառավարութիւնը մեծ կարեւորութիւն կուտայ այս խնդրին, եւ մօտ օրէն բանակցութեան պիտի սկսի, երբ ֆրանսական դեսպանը Էնկիւրի երթայ։

⁂ «Սօն Սաաթ» կը գրէ թէ Մէսթան աղա անուն պետ մը սպաննուած է Սուրիոյ սահմաններուն վրայ, Քիւրտ-Տաղիի շրջակայ Քիւրտերուն կողմէ։ Սպանեալը եղբայրն է Քիւրտ-Տաղի երեւելիներէն եւ Սուրիոյ Սահմանադիր ժողովի անդամներէն Հաճի Րէշիտ աղայի։

⁂ Այնթապէն կը հաղորդեն թէ թուրք ոստիկան զինուորները յաջողած են սպաննել չորս չարագործներ, որոնք երկար ատենէ ի վեր շահատակութիւններ կ'ընէին հարաւային սահմանին վրայ, մարդ կողոպտելով եւ սպաննելով։ Սպաննուածներն են Այնթապցի Մուհսին, Մէհմէտ եւ երկու ընկերները։





### Հ. Յ. Դ.

Լիոնի «Կայծակ» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս երեկոյ, ժամը 8.30ին, Գրադարանի սրահը։

Ցեսինի «Կայծակ» խումբի ժողովը՝ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 7.30ին Café de la Paixի սրահին մէջ։ Ներկայանալ անդամատետրով։

Մարսէյլի Պատեն. Միութեան ընդհ. ժողովը՝ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.ին Գրադարանի ընթերցասրահին մէջ։ Ներկայանալ անդամատետրով։

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Մոնթառժի, Գ. Պ.— 70։
Լը Ման, Ս. Մ.— 140։
Տրակինեան, Հ. Յ. Մ.— 100։
Փարիզ, Տիկ. Ա. Ս.— 50։
Փարիզ, Ս. Ռ.— 20։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Պարսկաստանի Մարաղա քաղաքէն Արամ Ղարիպեան որ 1925 — 1927 կը գտնուէր Փարիզկամ Մարսէյլ ուսկից մեկնած է Ամերիկա։ Մէկ ու կէս տարիէ ի վեր լուր ստացած չէ։ Իմացնել իր եղբօր՝ Arménag Garipian Str. Militar 5, Braila, Roumanie կամ «Յառաջ»ի վարչութեան։

— Կը փնտռուի Վանի Ալիւր Գիւղացի Պետրոս Շահզատէեան որ մէկուկէս տարի առաջ կը բնակէր Վալթըրթաուն։ Կը կարծուի թէ այժմ փոխադրուած է Պոստոն։ Գրել՝ Akabi Chahzadéian, Ave. B. Palissy, թիւ 6, IX, Décines (Isère).

Կը խնդրուի Ամերիկահայ թերթերէն արտատպել։















IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

